ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ-«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 16 1994

ԱՐՏԱՇԵՍ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍԸ ԵՎ ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑՈՒ «ՔՆՆԻԿՈՆԸ»

*Միջնադարյան հայ մշակույթի նշանավոր գործիչ Գրիգոր Մագիստրոսը, իր ժամանակի ամենազարգացած անհատներից մեկը, հայրենի դպրությունը խորունկ տիրապետելուց բացի, հմուտ էր հելլենական, ասորական և արաբական գիտությանն ու գրականությանը։ Նա փիլիսոփա էր, քերական, մանկավարժ, բանաստեղծ, թարգմանիչ, բնական գիտությունների ջատագով, հայրենի երկրում բարձրագույն կրթությունը տարածող և հովանավոր։*

*Գրիգոր Մագիստրոս Պահլավունին «մի հետաքրքիր դեմք է... իր ժամանակի համեմատ ազատամիտ ու լուսամիտ մի բազմագետ անձ,—գրում է Մանուկ Աբեղյանը։—Նրա մեջ մարմնացել է իր ժամանակի վերածնության մտքի մի կողմը—չբավականանալ միայն կրոնականով և եկեղեցական դպրոցով, վերանորոգել և զարգացնել հայերի մեջ հին հունական գիտությունը... և ընդհանրապես բազմակողմանի գիտանքներ ձեռք բերել...*

*Բոլոր ուսյալ աշխարհականների մեջ առանձնապես փայլում է այս Պահլավունի իշխանը..., իսկական լուսավորական գործիչ։ Նա ոչ միայն ուրիշներին հորդորել է գիտությամբ պարապելու և դպրոց ունենալու, այլ և ինքը շարունակ սիրով և անխոնջ հետևել է դրան՝ նշանաբան ունենալով «պատարուն ընթերցմամբ», «գիտութեամբ լուսաւորել զանձն»[1]։ Նա ուներ իր դպրոցը, որի, ինչպես նաև ուրիշ դպրոցների համար մշակել է ճեմարանական ծրագիր, ձեռք է բերել ձեռնարկներ և հանձնարարել ուսուցման։*

*Գործունեության այս ճանապարհին Գրիգոր Մագիստրոսը հանդիպում է Անանիա Շիրակացու «Քննիկոնին»։*

*Անանիա Շիրակացին «Քննիկոնը» գրում է Անաստաս կաթողիկոսի (661—667 թթ.) հանձնարարությամբ։ Այդ մասին ուղղակի վկայություն ունենք Ստեփանոս Ասողիկի Պատմութեան մեջ[2]։ Նրանից առաջ, Հ. Դրասխանակերտցին այս նույն բանը հաղորդում է առանց «Քննիկոն» անունը տալու[3]։ Նրա վկայությամբ «Քննիկոնը» կաթողիկոսի մահից հետո ուշա-*

---

1 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք երկրորդ (11—19-րդ դդ. 30-ական թթ.), Երևան, 1946, էջ 16—19։*

2 *Մատենադարան, ձեռ. № 2865, էջ 170 ա։ Հմմտ* Ստ. Տարոնացի, *Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 285։ Հրատարակիչ Ս. Մալխասյանը «Քննիկոն» բառի փոխարեն գրել է «Քրոնիկոն» և ստորին լուսանցքում ծանոթագրել. «Ձեռագրում սատ և սարե «Քննիկոն»։ Այդպես է նաև Տարոնացու Պատմութեան բոլոր ձեռագրերում։ (Տե՛ս* Ա. Մաթևոսյան, *Անանիա Շիրակացու «Քննիկոնը», «Լրաբեր հաս. գիտ.», 1974, № 7, էջ 69—70)։*

3 Հ. Դրասխանակերտցի, *Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 92—93։*

դրության չի արժանանում, և ինչպես հաստատում է Գրիգոր Մագիստրոսը, պահվում է կաթողիկոսարանում[4]։

Պետրոս Գետադարձին 1036 թ. գահազրկելու և մի տարի անց վերստին գահին հաստատելու առթիվ Գ. Մագիստրոսը մի նամակ է ուղարկում նրան, որն ունի այսպիսի խորագիր. «Առ տէր Պետրոս ի ժամանակի խուժան յառնելոյ ի քաղաքին, ի վերայ նորա բան մխիթարական և հարցումն Անանիայի գրոց Շիրակայնոյն, զոր մեծ Քննիկոնն անուանեն»։ Վերնագիրը ցույց է տալիս, որ նամակում երկու հարց է շոշափվել. առաջինը Պետրոս Գետադարձին աթոռից զրկելու և վերստին աթոռին հաստատելու մասին մխիթարական խոսք է[5]։ Ցավելով տեղի ունեցածի համար, Գ. Մագիստրոսը մխիթարում է նրան, ոգևորում, հորդորում, խորհուրդ է տալիս մտքի անսասությամբ, հոգու աչքով շուրջը նայել և ծառայել ժամանակին («...միայն պարտ է ասա՛ց աչօք շուրջ հայել և ժամանակի ծառայել»)[6]։

«Ժամանակի ծառայել» է նաև Անանիա Շիրակացու «Քննիկոնի» մասին հոգալը, որին Մագիստրոսը անդրադառնում է նամակի երկրորդ կեսում։ Բերում ենք նամակի այդ մասը, միայն խորագրի «հարցումն» բառը ուղղում ենք «հայցումն» ձևով, հիմք ունենալով Վենետիկի Մխիթարյան մատենադարանի ձեռագիրը[7], ապա՝ նամակի մեջ նույն նպատակով օգտագործող «զհայցուածս» բառը և, վերջապես, թղթի ավարտը, ուր բացահայտվում է նամակի նպատակը. այնտեղ Գրիգոր Մագիստրոսը Պետրոս Գետադարձից Անանիա Շիրակացու «Քննիկոնի» նոր ընդօրինակություն է խնդրում, հայցում։ Ուրեմն՝ «...Հայցումն Անանիայի գրոց Շիրակայնոյն, զոր մեծ Քննիկոնն անուանեն»։

«Գրիգոր Մագիստրոսի թղթերն ունեն վերնագրեր,— գրում է Մ. Աբեղյանը,— որոնք ծագում են հավանորեն կամ հեղինակից, կամ նրան մոտիկ մարդկանցից, քանի որ վերնագրեր դնողներն իմացել են, թե ինչ առթիվ են գրված և ումն են ուղղված այս կամ այն թուղթը։ Գրության բովանդակությունից միայն՝ երբեմն չի իմացվում այդ»[8]։ Ինչպես մյուս թղթերում, այնպես էլ այստեղ գրության բովանդակությունը և խորագիրը լիակատար համապատասխանության մեջ են, որն հաստատվում է նաև Ստեփանոս Ասողիկի հանրահայտ վկայությամբ[9], միջնադարյան մատենագիտական ցանկերով ու ձեռագրացուցակներով[10]։

Նամակի սկզբից տեղեկանում ենք, որ Անանիա Շիրակացու գիրքը, որ կոչվում է «Մեծ Քննիկոն», գտնվում է «տէրունեան տանը», այսինքն՝ կաթողիկոսարանում, և մինչև Պետրոս Գետադարձի կաթողիկոսական գահ բարձրանալը (1019 թ.), անշրջացած, թաքուն պահում էին գրվանի տակ։ Այս նշանակում է, որ 667 թվականից (Անաստաս կաթողիկոսի մահը)

4 Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 8։

5 Ուրեմն նամակը գրված է այդ դեպքերից անմիջապես հետո, 1038 թ.։

6 Նույն տեղում, էջ 7։

7 Գ. Զարբհանալյան, Հայկական հին դպրության, Վենետիկ, 1897, էջ 579։

8 Մ. Աբեղյան, նշվ. աշխ., էջ 21։

9 Ստ. Տարոնացի, Պատմություն տիեզերական, էջ 285։

10 «Այս են վարդապետական գրեանք ի վանքն Ամրդոլու՝ համարով, անջինջ յիշատակ գրեալ խմոյս ձեռամբ Վարդանայ վարդապետին», «Արարատ», 1903, էջ 178—189։ Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վիեննա, 1895, էջ 253։ Հ. Թոփչյան, Ցուցակ ձեռագրաց Արմաշի վանքին, Վենետիկ, 1962, էջ 134 և այլն։

«Քննիկոնը», որի մեջ գտնվում էր նաև Հայոց անշարժ տոմարը, արգելված էր կաթողիկոսարանում։

Գրիգոր Մագիստրոսը «Քննիկոնն» ուսումնասիրել էր մինչև Պետրոս կաթողիկոսին գահազրկելը։ Նամակի ընդհանուր ոգուց երևում է, որ նամակից առաջ և «Քննիկոնն» ուսումնասիրելուց հետո Պետրոս կաթողիկոսի և Գրիգոր Մագիստրոսի միջև խոսակցություն է տեղի ունեցել, որտեղ Շիրակացու աշխատության գաղտնի պահելը պատճառաբանվել է նրա «խրթին և անյայտաբար», այսինքն՝ «դժվար հասկանալի», «ըստ իմաստից մթին», «անորոշակի» գործ լինելով։ Գրիգոր Մագիստրոսը այդ տեսակետը փարատելու համար, նամակով պարզաբանում է աշխատության բովանդակությունը, գրվատում նրա գիտականությունը, նշում գործնական կարևորությունն ու անհրաժեշտությունը, որպես ուսումնակրթական ամբողջ համակարգի դասագրքի, և մի օրինակ էլ խնդրում, որպեսզի օգտագործի իր դպրոցում։ Այսպես է դիմում կաթողիկոսին.

«Փոխան Յիսուսի, համարձակիմք, միշտ սովորեալ յառատաձիր պարգևս, զկարևորսն և զպիտանացուսն յարատևական բաշխելով քեզ, որ ուղ երբէք դանդաղիս զգիրս Անանիայի Շիրակայնոյ, որ բազում աշխատութեամբ և յածաչու խոնջմամբ հաւաքեալ ի բազմազան և յօրինաբեղուն մատենից. յորում և ենթակայացեալ են ոչ միայն քառիցն արհեստք, այլ բոլոր էակացն խոկմունս. որ են այժմ ի տան տէրունեան, զոր նախքան զքեզ խրթնացեալ և թագնի ընդ գրուանաւ ծածկէին... յորում մթերեալ են տոգորք աստուածային, և ենթակայացեալ ամենայն արհեստի մակացութեան, և նախադասեալ է թուականութեանն և երաժշտականութեանն, որք են ի տարորոշ քանակէ տարակացեալք, իսկ երկրաչափութեանն և աստեղաբաշխութեանն, որք են ի շարունակ քանակէ. և զկնի այսոցիկ յարամանեալք արհեստք և մակացութիւնք, մատենագրութիւնք և զրէ եթէ ամենայն բոլոր վարժումն հռետորական»[11]։ Ինչպես տեսնում ենք, «Քննիկոնը» ուսումնակրթական որոշակի համակարգի, այս դեպքում հռետորական կրթության դասընթացի դասագիրքն է, որը պարունակում է «քառիցն արհեստք» և որը Անանիա Շիրակացին համարում է «հռետորական ուսումն»։ Քառյակ արվեստները կամ գիտությունները նույնպես ընկած էին հույն փիլիսոփա Պլատոնի դաստիարակության հիմքում։ Մեր թվարկության սկզբներին, զանազան փոփոխություններից հետո, դրանց վրա հենված անտիկ դասընթացը հետևյալ գիտություններից էր կազմված. քերականություն, հռետորություն, տրամաբանություն, թվաբանություն, երկրաչափություն, երաժշտություն և աստղագիտություն։

Քրիստոնեական եկեղեցին, որն այնքան նպաստել էր անտիկ կուլտուրայի ոչնչացմանը, V դարի սկզբներին փորձ արեց ի մի բերել անտիկ գիտելիքների նվազագույնը, որն իրեն անհրաժեշտ էր։ «Չի կարելի հասկանալ Աստվածաշունչն ու եկեղեցու հայրերին, պայքարել հեթանոսության ու հերետիկոսության դեմ առանց իմանալու հռետորությունը, քերականությունը, դիալեկտիկան՝ պատմությունը և նույնիսկ բնական գիտությունները»,— գրում է եկեղեցու հեղինակություններից մեկը, Օգոստինոսը (354—430 թթ.)[12]։

11 Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, էջ 8։

12 «Միջին դարերի պատմություն», հ. Ա., Երևան, 1958, էջ 266։

*IV դարի սկզբներին Մարցիանոս Կապելլան տալիս է այդ առարկաների շարադրանքը, Բոեցիոսը (481—525 թթ.) գրում է տրամաբանության, բարոյագիտության, թվաբանության, երկրաչափության և երաժշտության դասագրքեր։ VI դարում Կասիոդորը առաջին անգամ գործածում է «յոթն ազատ արվեստներ» արտահայտությունը, և այն դիտում որպես քրիստոնեական աստվածաբանության նախապատրաստական ուղղափառ արտաքին ուսմունք։ Իսիդորը (556—636 թթ.) յոթ ազատ արվեստներից առաջին երեքը՝ քերականություն, հռետորություն, դիալեկտիկա դասավորում է իբրև «եռուղի», իսկ մյուս չորսը՝ թվաբանություն, երկրաչափություն, երաժշտություն և աստղագիտություն՝ իբրև «քառուղի» դասընթացներ, «ըստ որում «եռյակը» համարվում էր ուսուցման առաջին աստիճանը, «քառյակը»՝ բարձր։ Այդ առարկաները մտան միջնադարյան բոլոր դասագրքերում և պահպանվեցին մինչև 15-րդ դարը»[13]։*

*IV—V դարերում գոյություն ունեին քերականների, հռետորների և փիլիսոփաների դպրոցներ։ «Քերականների դպրոցներում պարապմունքները շարունակվում էին չորս տարի, որից հետո երիտասարդը կամ ուսումն ավարտված էր համարում կամ ընդունվում էր հռետորական դպրոց... Հունական, լատինական կամ խառը հռետորական դպրոց, որի տևողությունը նույնպես չորս տարի էր»[14]։ Ահա միջնադարյան այս տիպի դպրոցի համար էր դասագիրք ստեղծել Անանիա Շիրակացին, որի առանցքը քառյակ արվեստներն էին, որի մեջ, ինչպես նշում է ինքը, նաև՝ «ամենայն բոլոր վարժումն հռետորական»[15]։*

*Գրիգոր Մագիստրոսը այնուհետև պարզաբանում է, որ «Քննիկոնի» մեջ հավաքված նյութերը Անանիա Շիրակացին քաղել է քաղդեացիների, հույների և այլ ազգերի մատենագիրներից, որոնք այդ ժողովուրդների մոտ ուսումնասիրվում էին արդեն որպես իմաստասիրական գիտություն, որպես հռետորական ուսում։ Քանի որ ովքեր դրանցով նախապես չեն կրթված, բոլորովին հնարավոր չէ այդպիսիներին աստվածաբանության մեջ մուտք գործել. «Թէպէտ և մանաւոր գիտչէտեսական զօրէն գործաւէր մեղուի ամբարեաց ի մեղուանոցի այդր ի բազմավէտ մատենագրից Քաղդեացւոց և Յունաց և ամենայն ազգաց առ ի ծանօթ լինելոյ, որք նախ քան զայնոսիկ հաւաքեալն մատեանս, մակացու եղեալ իմաստասիրութեան, քան զի որք ոչ նախուստ կրթեալք են, բոլորովին ոչ գոյ հնար թեակոխել զայնպիսի աստուածաբանութիւնս. քանզի պարտ է նախ ի բնաբանականէն յուսումնականն ամբառնալ և անտուստ աստուածաբանականն... վասն որոյ և Պղատոն իսկ զգուշացուցանէ այսպէս յիրումն աստուածաբանութեանն. Աներկրաչափական ոք մի ներամտեսցէ. զայսոսիկ ասելով. զի Մի ոք անկատար ի քառիցն ենթակայէ մտցէ ի լսարանն...»։*

*Գրիգոր Մագիստրոսը գիտությունների դասակարգման վերը բերված ձևակերպումը վերցրել է Անանիա Շիրակացու «Քննիկոնից», որի ներբողյանական հատվածում, որը Գրիգոր Մագիստրոսը անվանում է «տո-*

---

13 *«Միջին դարերի պատմություն», խմբ. ակադ. Ս. Դ. Սկազկին և ուրիշներ, Երևան, 1975, 735—736։*

14 *Г. Е. Жураковский,* Очерки по истории античной педагогики. Учпедгиз, М., 1940, стр. 354, 362.

15 Գրիգոր Մագիստրոսի *Թղթերը, էջ 8—9։*

գորք սատուածային» կամ «էակաց խոկմունս», կարդում ենք. «Զի բնականն ամենեւին մարմին է և աստուածականն ամենևին անմարմին, և ուսումնականն միջակ երկուցն, զի ունի մասն ի մարմնոյ և յանմարմնոյ, վասն այն ի միջի բնաբանականին և աստուածաբանականին եդ զուսումնականն, զի զկնի ամենևին մարմնականին վարժելով զամենևին անմարմնական զտանիմք»: Անանիա Շիրակացին, իր հերթին, այն վերցրել է Դավիթ Անհաղթից[16]:

Անհրաժեշտ է նշել, որ հռետորական դասընթացի տարողությունը ավելի ընդարձակ էր: Նշված առարկաների հետ դասավանդվում էին նաև բժշկություն[17], տոմար («Քննիկոնի» մեջ)[18] և այլ առարկաներ:

«Եւ արդ՝ քանզի սակս մատենին Անանիայի եղև յիշատակ իմաստասիրելոյս մեզ, բեր ուղիղ խրթին և անյայտաբար. կամիմք զհայցուած մեր ծանուցանել մերոյ լուսաւորչիդ. ի բազմաց անփոյթ եղելոյ այսպիսի գործառութիւնք և հանդէսք, որ ոչ երբէք ի սոսցին վարժելոյ զրամարտկոսաց և քերդողաց հնացեալ, ի մոռացումն այսպիսւոյ մատենի ոչ միայն եղև անկանել, այլ և բազմաց, որպէս ի մերոյն Մովսիսէ[19] ուսեալ, գտեալ գտաք և յայգմ մատենի մակագրութեան վերծանեաք: Քանզի Արամեան սերի հպարտութիւն և անամօք բնութիւն և խստապարանոց բարս ոչ տորակայի յայսոսիկ կրթութիւնս յարատևական հաւանել, կամ եթէ ոչ փոյթ, որք պետականին հասին բախտի, մեծարու լինել և խուզել զխոհեմական արհեստս ի զարդ քարգնոստական ապարանին, որպէս մեծ Փոլոմէոսն այն և որք այլք այդպիսիք»[20]:

Մագիստրոսը, որպես իր պատճառաբանության ամենահարմար ապացույց, բերում է իր անձի օրինակը, ցույց տալու համար, որ եթե ինքը հասկացել է Անանիա Շիրակացու «Քննիկոնը», պատճառն այն է, որ նա ուներ հենց այդ բնագավառի կրթություն, որ ձեռք է բերել արաբական, քաղդեական և հունական մատենագիրներից. «եւ զի բազում աշխատասիրութեամբ խոնջեալ և տագնապեալ, մինչ տակաւին յիմում անտիականն

---

16 «Եւ պարտ է գիտել, զի բնաբանականն զառաջինն ընկալաւ դաս... որպէս ամենեւիմբ նիւթականս: Իսկ ուսումնականն զմիջինն ընկալաւ դասաւորութիւն, այսինքն ի մէջ բնաբանականին և աստուածաբանականին, վասնզի և նիւթաւոր է, որպէս աստուածաբանականն: Իսկ աստուածաբանականն... զվերջին ընկալաւ դասաւորութիւն, վասնզի ոչ է կարողութիւն յետ բնաբանականին յաստուածաբանականն ամբառնալ, վասնզի և ոչ է պարտ յամենեւիմբ նիւթականացն՝ այն ինչ աննիւթականս մատչել...» (Դաւիթ Անյաղթ, Երկասիրութիւնք փիլիսոփայականք. Համահավաք քննական բնագիրը և առաջաբանը Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1980, էջ 87—88): Բնականաբար այն ծանոթ էր նաև Գ. Մագիստրոսին, ինչպես երևում է նշված նամակի շարունակությունից:

17 *Т. В. Блаватская*, Из истории греческой интеллигенции эллинистического времени. М., 1983, стр. 24: Robert Browning, Bizantinische Schulen und Schulmeistern, „Das Altertum", Berlin, 1963, B—9, N 2, s. 19.

Կ. Մուրադյան, Գրիգոր Նազիանզացին հայ մատենագրության մեջ, Երևան, 1983, էջ 18, 20:

Գր. Մագիստրոսի Թղթերը, էջ 105, 228:

18 Ստ. Տարոնացի, Պատմութիւն, էջ 285:

19 Գրիգոր Մագիստրոսը նկատի ունի Մովսես Խորենացու «Հայոց պատմության» առաջին գրքի Գ գլուխը՝ «Մեր առաջին թագավորների և իշխանների անխնամասեր բարքի մասին»: Շարունակության մեջ նկատի է առնված դարձյալ նույն գրքի Բ գլուխը, ինչպես նաև Ողբը (Մ. Խորենացի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1981, էջ 8,9, 11—13, 452):

20 Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, էջ 9:

եյով տիս, Հայոց Հող մակացու այժմ եղեալ, սուղ ինչ էակացն Հասեալ, ըստ որումն են յԱրաբացւոց և Քաղդէացւոց և Յունաց, ոչ դանդաղեցայ քննութեամբ զփորձ առնուլ»[21]:

Գրիգոր Մագիստրոսի և նրա կրթության վերաբերյալ ունենք այսպիսի վկայություն. «Յոյժ իմաստուն և Հանճարեղ, և ներքին և արտաքին ուսմամբ ներկրթեալ վարժմամբ և մանկական տիոց՝ Հայկական և յունական դպրութեամբ, մինչև Հասեալ և Հռետորական աստիճան փիլիսոփայութեան»[22]: Եթե կենսագիրը նկատի ունեցած լինի նույնիսկ նամակի վերը բերված տողերը, այդ ապացույց է կրկին այն բանի, որ «Քննիկոնը» Հռետորական ուսման դասընթաց է, և Մագիստրոսը այն ձեռք է բերել մեծ դժվարություններով՝ այլևայլ դպրություններից, ուստի նամակի վերջում նա խնդրում է մի նոր օրինակ «Քննիկոնից»:

Այդ օրինակը պետք է Հեշտ կարդացվի, որ ինքը չչարչարվի թե՛ ընթերցելու, թե՛ ուսումնասիրելու ժամանակ: «Եւ խնդրեմք ի քումմէ լուսափայլութենէդ զնորագոյնն մատեան շնորհել մեզ, զի այժմ մերձ առ ծերութիւն Հասեալ եմք, և զիւրին վերծանեալ Հասցուք ըստ կարողութեան, զի մի յերկուցունց կողմանցն ունիցիմք մարտակցութիւնս՝ տեսութեան և մտածութեան, քանզի լուսով քո տեսանեմք զլոյս: Ապա եթէ ոչ այսօրիկ Հաճոյ թուեսցի քումդ աստուածապետական իշխանութեանդ, զոր և կամեսցի, այն իբրև յաստուածուստ պարգև Համարեալ է մեզ: Ողջ լեր, փոխան Աստուծոյ»[23]:

Գրիգոր Մագիստրոսը ցանկանում է ունենալ «Քննիկոնի» ընդօրինակած նոր մատյան, որը գրված լինի ոչ թե Շիրակացու «Քննիկոնը» շարադրելիս օգտագործած գրատեսակով, որը դժվար ընթեռնելի էր, այլ դյուրընթեռնելի գրատեսակով, այսինքն՝ բոլորգրով[24]: Գրիգոր Մագիստրոսը Պետրոս կաթողիկոսից ստանում է իր խնդրածը, Անանիա Շիրակացու «Քննիկոնից» մի օրինակ՝ «զնորագոյնն մատեան»: Սանահինցիներին գրած նամակում Հիշում է Սանահինի «Հռետորական և երաժշտական վարժարանն», ուր սովորում էին երիտասարդները «բոլոր արհեստից և մակացութեան»[25]: Իսկ Պետրոս Գետադարձի մոտ գտնվող իր աշակերտներին խորհուրդ է տալիս, թե ինչ ծրագրով պետք է պարապել, որն ավարտվում է այսպես. «Զի յամենայն իմաստասէրն խոստովան լիցի զգիտութիւն և ուրացեալ զանգիտութիւն, մանաւանդ ըստ կարողութեան քառիցն արհեստից՝ թուական, երաժշտական, երկրաչափական, աստղաբաշխական»[26]: Աշակերտներն այն ձեռքի տակ պետք է ունենային, որպեսզի նրանից սովորեին:

Պետրոս Գետադարձից «զնորագոյնն մատեան» ստանալուց Հետո այն մտցնում է ուսումնական իր ծրագրի մեջ: Այդ ժամանակից քառյակ գիտությունը դարձավ Հայ վարդապետարանների ուսումնական ծրագրի անքակտելի մասը: Հայ վարդապետարանի շրջանավարտի ձեռք բերած գիտություն-

---

21 Անդ:

22 Ա. Ալպոյաճյան, Պատմություն Հայ դպրոցի, Կահիրե, 1946, էջ 112—113:

23 Անդ, էջ 9—10:

24 Շիրակացին, ինչպես երևում է նրա ժամանակից, Հենց նրա գործերի ընդօրինակություններից մեզ Հասած պատառիկներից, գրել է գրչագրով (ուղղագիծ երկաթագրով):

25 Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, էջ 105: Հմմտ. Ա. Մաթևոսյան, Նորից Շիրակացու «Քննիկոնի» մասին, ՊԲՀ, 1981, № 2, էջ 228:

26 Նույն տեղում:

ների մեջ էր. «զբնաբանականն, զուսումնականն, զաստուածաբանականն, զԹուականն, զերաժշտականն, զերկրաչափականն և զաստղաբաշխականն և զամենայն իմաստս հռետորական հանճարոյ արտաքին փիլիսոփայութեան...»,—ինչպես նշում է Կիրակոս Բանասերը[27]:

«Քննիկոնի» պարունակության մեջ էր նաև Հայոց անշարժ տոմարի Անանիա Շիրակացու շարադրանքը: Հովհաննես Դրասխանակերտցին գրում է, որ Անաստաս կաթողիկոսը Անանիա Շիրակացուն հանձնարարել է գրել Հայոց անշարժ տոմարը: Ասողիկը հուշում է, որ Հայոց անշարժ տոմարը գտնվում էր «Քննիկոն» հրաշազան մատյանի մեջ, որ կաթողիկոսի պահանջով շարադրել էր Շիրակացին: Մագիստրոսը ներկայացնում է «Քննիկոնի» պարունակությունը՝ քառյակ արվեստներից դուրս, նաև այլ արհեստներ, որի մեջ՝ նաև տոմարական արվեստը, մակացություններ, մատենագրություններ, միով բանիվ, ողջ հռետորական դասընթացը: Այս ամենն ապացուցվում է նորահայտ նյութերով:

Պետրոս կաթողիկոսին ուղղված Գրիգոր Մագիստրոսի նամակը Անանիա Շիրակացու «Քննիկոնի» մասին վավերական եզակի փաստաթուղթ է, մատենագրական, մատենագիտական անգնահատելի աղբյուր Անանիա Շիրակացու անհայտացած երկի մասին: Նրա մեջ ներկայացված է «Քննիկոնի» բովանդակությունը, աղբյուրները, նրա տեղը հայ միջնադարյան ուսումնակրթական համակարգում: Նամակը նաև անփոխարինելի ուղեցույց է Անանիա Շիրակացու «Քննիկոնը» վերականգնելու ճանապարհին:

Նամակի «Քննիկոնին» վերաբերող հատվածը բանասիրության ուշադրությանն է արժանացել ավելի քան հարյուր տարի առաջ: Գ. Զարբհանալյանը այն հիշում է որպես Պետրոս կաթողիկոսին ուղարկած «Հմտական և գեղեցիկ» նամակներից մեկը[28]: Անցյալ դարի վերջերին Գ. Տեր-Մկրտչյանը օգտագործում է Անանիա Շիրակացու ժառանգության ճակատագիրը պարզելու կապակցությամբ[29]: Ս. Հայրապետյանը նամակից քաղվածք է բերում ցույց տալու համար, որ Շիրակացին սովորել է «քերականաց և հռետորական դպրոցներում»[30]:

Կ. Կոստանյանցը 1910 թ. հրատարակած Գրիգոր Մագիստրոսի Թղթերի ծանոթագրություններից մեկում, նկատի ունենալով սույն նամակը, գրում է. «Տ. Պետրոս ևս հոգատարութիւն է ունեցել ձեռագրերի մասին, նա ազատել է կորստից Անանիա Շիրակացու մեծ Քննիկոնը, որը սակայն մեզ չի հասել. այդ առիթ է տվել Մագիստրոսին, բողոքել «Արամյան ազգի անմտության» վրա, մտաբերելով և Մ. Խորենացու ողբունքը, և գոհունակություն հայտնել կաթողիկոսին, որ ձեռագրերը ժողովել և տեղավորել է եկեղեցում»[31]: Այստեղ միայն պետք է նկատել, որ ոչ թե Պետրոս կաթողիկոսն է հավաքել, այլ մինչև նա, դեռևս Անաստաս կաթողիկոսի ժամանակ, Շիրակացու գործը և օգտագործած աղբյուրները գտնվում էին կաթողիկոսարանում:

---

27 Գ. Հովսեփյան, *Թովմա Մեծոփեցու կյանքը*, Վաղարշապատ, 1914, էջ 1—2:

28 Գ. Զարբհանալյան, նշվ. աշխ., էջ 579:

29 Գ. Տեր-Մկրտչյան, *Անանիա Շիրակացի*, Վաղարշապատ, 1886, էջ 12:

30 Ս. Հայրապետյան, *Անանիա Շիրակացի, կյանքն ու գործունեությունը*, «Մատենադարանի գիտական նյութերի ժողովածու», Երևան, 1941, № 1, էջ 7:

31 Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, էջ 295:

Նամակին ավելի հիմնավոր անդրադառնում է Մ. Աբեղյանը։ 1946 թ. հրատարակած «Հայոց հին գրականության պատմության»՝ Գրիգոր Մագիստրոսին նվիրված բաժնում նա գրում է. «Ուսումը լինում էր հայերեն, հարկավոր էր ունենալ հայերեն լեզվով գրքեր։ Դրա համար կային հին թարգմանությունները, ինչպես Ողիմպիանոսի առակները, որը հիշում է Մագիստրոսը (ԹԸ, էջ 132)։ Կար և Անանիա Շիրակացու «Մեծ Քննիկոնը»,—«յորում մթերեալ են,—ասում է նա,—տոգորք աստուածային և ենթակայեցեալ ամենայն արհեստի մակացութեան և նախադասեալ է թուականութեանն և երաժշտականութեանն... երկրաչափութեանն և աստղաբաշխութեանն... և զկնի այսոցիկ յարամանեալք արհեստք և մակածութիւնք, և գրէ եթէ ամենայն բոլոր վարժումն հռետորական»[32]։ Ուրեմն առաջին անգամ Մ. Աբեղյանն է նշում, որ Անանիա Շիրակացու «Քննիկոնը»՝ Մագիստրոսի կողմից օգտագործվել է որպես դասագիրք իր հիմնած ճեմարանում[33]։

1959 թվականին «Մաթեմատիկան Հայաստանում հին և միջին դարերում» աշխատության մեջ Գ. Պետրոսյանը, խոսելով Մագիստրոսի դպրոցի մասին, կրկնում է Մ. Աբեղյանին. «Դասավանդումը կատարվում էր հայերեն լեզվով, իսկ որպես դասագրքեր՝ օգտագործվում էին թարգմանությունների հետ միասին նաև ինքնուրույն աշխատությունները։ Մագիստրոսը այդ աշխատություններից բարձր էր գնահատում հատկապես Անանիա Շիրակացու «Մեծ Քրոնիկոնը», որովհետև այնտեղ, գրում է նա, ...մթերեալ են. և այլն»[34]։ Մ. Աբեղյանի մոտ օգտագործված «Մեծ Քննիկոնը» այստեղ սխալ կերպով դարձել է «Մեծ Քրոնիկոն»[35]։

---

32 Մ. Աբեղյան. Հայոց հին գրականության պատմություն, էջ 20—21։

33 Հայ դպրոցի և մանկավարժության պատմության ուրվագծերում Ա. Մովսիսյանը նույնպես անդրադառնում է սույն նամակին (Ա. Մովսիսյան. Ուրվագծեր հայ դպրոցի և մանկավարժության պատմության (5—15-րդ դարեր), Երևան, 1958, էջ 221)։

34 Գ. Պետրոսյան. Մաթեմատիկան Հայաստանում հին և միջին դարերում, Երևան, 1959, էջ 127, 131։

35 Որ Գ. Պետրոսյանը անմիջապես Մագիստրոսի Թղթերից չի օգտվել, երևում է սույն քաղվածքի նախորդ պարբերությունից. «Գրիգոր Մագիստրոսի մանկավարժական հայացքների մասին մենք որոշակի կարծիք կարող ենք կազմել Տեր Պետրոսին ուղղված նրա վերոհիշյալ Թղթից, որտեղ նա պարզ կերպով շարադրել է, թե ինչպես պետք է կազմակերպվի ուսումը, ինչից պետք է սկսել և ինչով վերջացնել»,—գրում է Գ. Պետրոսյանը (էջ 129)։ Սակայն բերված փաստերը ոչ թե Տեր Պետրոսին ուղղված վերոհիշյալ Թղթից են, որ գտնվում է «Թղթերի» 8—11 էջերում, այլ Բարսեղ և Եղիշե աշակերտներին ուղարկած նամակից, որը գտնվում է նույն գրքի 105—106 էջերում։ Իսկ որ Պետրոսյանի աղբյուրը Մ. Աբեղյանն է, երևում է ստորև բերված օրինակից.

| Մ. Աբեղյան, նշվ. աշխատությունը, էջ 20։ | Գ. Պետրոսյան, նշվ. աշխ. էջ 129։ |
| --- | --- |
| «Այս էլ, ուրեմն առաջին շրջանի դասընթացն էր։ Ուսումը պետք է սկսել Ս. գրքի ընթերցանությամբ և առասպելավարժությամբ։ Ապա հոմերական ու պղատոնական և այլ գրքերի հատվածներից հետո «չորս արհեստները» թվաբանություն, երաժշտություն, երկրաչափություն, աստղաբաշխություն և նոր անցնել երկրորդ աստիճանի ուսման, որ է քերականություն և մյուսները»։ | «Ըստ Մագիստրոսի՝ առաջին աստիճանում ուսումը պետք է սկսել Ս. գրքի ընթերցանությունից և առասպելավարժությունից։ Դրանից հետո պետք է կարդալ հոմերական և պղատոնական ու այլ գրքերից հատվածներ և ապա ձեռնամուխ լինել «չորս արհեստների» թվաբանության, երաժշտության, աստղաբաշխության ուսումնասիրությանը։ Միայն այս բոլորից հետո կարելի է սկսել երկրորդ աստիճանը՝ ուսումը, որն |

Գրիգոր Մագիստրոսի նամակին Գ. Պետրոսյանը կրկին անդրադառնում է 1980 թվականին։ Անանիա Շիրակացու գիտական ժառանգության ուսումնասիրությունը համարելով ավարտված «ֆիզիկա-մաթեմատիկական և այլ գիտությունների պատմության տեսանկյունից», գտնում է, որ «մնացել են սկզբնաղբյուրների հետ կապված որոշ կնճռոտ հարցեր»[36], որոնց ինքը պետք է անդրադառնա, մանավանդ, որ «որոշ նոր ուսումնասիրություններում «Քննիկոնի» բովանդակությունը բխեցնում են Գրիգոր Մագիստրոսի նամակից»։

Ժամանակին որդեգրելով Մ. Աբեղյանի տեսակետը նա հայտարարում էր, որ Մագիստրոսը իր դպրոցում դասավանդվող «աշխատություններից բարձր էր գնահատում հատկապես Անանիա Շիրակացու «Մեծ Քրոնիկոնը», այժմ ժխտում է այն, որպեսզի արդարացնի իր նոր որդեգրությունը, այսինքն՝ «Քննիկոնը» տոմարական աշխատություն է, ուրիշ ոչինչ»[37],

«Մեր «Մաթեմատիկան Հայաստանում հին և միջին դարերում...» աշխատության մեջ,—պարզաբանում է Գ. Պետրոսյանը,—տոմարական հարցերը քննության չեն ենթարկվել, որոշ հարցեր՝ կապված Գրիգոր Մագիստրոսի նամակի հետ, իրենց լուսաբանությունը չեն ստացել»[38]։ Եվ ահա սկսում է նամակի «լուսաբանության» առաջին հերթը. «Գրիգոր Մագիստրոսի նամակի վերնագրում նշված է «Մեծ Քննիկոն», բնագրում «Քննիկոն» բառը չի գործածվում։ Ավելին, նամակում բերված գիտությունների շարքում «Քննիկոնի» մասին ոչ մի հիշատակություն չկա։ Ամբողջ նամակում ոչ մի բառ չկա Անանիա Շիրակացու Անաստաս կաթողիկոսի կողմից արված հանձնարարությունների մասին։ Այս ամենը ցույց է տալիս, որ վերնագիրը հետո է գրված, և նրա մեջ նշված «Մեծ Քննիկոնը» ոչ մի առնչություն չունի նամակի հետ, դա հետագայում կատարված հավելում է», որ «գրչագիրները չիմանալով հարցի էության մեջ, ըստ իրենց նախասիրության վերնագիր են դրել և այնտեղ էլ գործ ածել «Քննիկոն» բառը։ Մագիստրոսն իր նամակին այդպիսի վերնագիր դնել չէր կարող»[39]։

Եթե Պետրոսյանի կարծիքով «Քննիկոնը» միայն տոմար է և ուրիշ ոչինչ, նշանակում է Մագիստրոսի դպրոցում թվաբանությունը, երաժշտությունը, երկրաչափությունը, աստղաբաշխությունը Անանիա Շիրակացու

---

«Առասպել» բառը նշանակում է զրույց աստվածների և դյուցազունների մասին, և առակ արդի սովորական իմաստով։

ընդգրկում է քերականություն և այլ առարկաներ։ «Առասպել» բառը և զրույց էր աստվածների ու դյուցազունների մասին և առակ այն իմաստով, ինչպես այժմ է հասկացվում։

36 Գ. Պետրոսյան, Անանիա Շիրակացու «Քննիկոնը», ՊԲՀ, 1980, № 2, էջ 212։

37 Ա. Աբրահամյանը Անանիա Շիրակացու «Քրոնիկոնը» տոմարական աշխատություն է համարել Շիրակացուն նվիրված մենագրության մեջ (1944 թ., էջ 105)։ 1979 թ. Շիրակացու Մատենագրության աշխարհաբար հատորյակի առաջաբանում Ա. Աբրահամյանը և Գ. Պետրոսյանը գրում են. «Շիրակացու տոմարական աշխատություններից ամենակարևորը «Քրոնիկոնն» է (էջ 14)։ Իր հաջորդ հոդվածում Գ. Պետրոսյանը «արդարացնում» է. «Անանիա Շիրակացու տոմարական աշխատությունը հայ մատենագրության մեջ հայտնի է «Քննիկոն» կամ «Քրոնիկոն» անվան տակ (ՊԲՀ, 1983, № 4, էջ 132)։

38 Գ. Պետրոսյան, նշվ. աշխ., ՊԲՀ, 1980, № 2, էջ 212, ծն. 1։

39 Գ. Պետրոսյան, նշվ. աշխ. էջ 215։

«Քննիկոնից» չեն սովորել, ինչպես մի ժամանակ կրկնում էր ինքը[40]։ Հաջորդ հոդվածում (1983 թ.)[41] պնդելով, որ «Անանիա Շիրակացու՝ գիտության պատմության հայտնի տոմարական աշխատությունն է», որ «Քննիկոնը բացի տոմարական նյութից ու աղյուսակներից ուրիշ ոչինչ չի պարունակում»[42], սկսում է «պարզաբանել» որոշ հարցեր՝ կապված Գրիգոր Մագիստրոսի նամակի հետ։ «Այժմ դիմենք Գրիգոր Մագիստրոսի նամակին՝ ուղղված Պետրոս կաթողիկոսին, որովհետև այդ նամակի վերնագրում տեղ է գտել «Մեծ Քրոնիկոն» անվանումը,—սկսում է Պետրոսյանը նույնությամբ, ինչպես 1980 թ. հոդվածում[43]։ Նամակը նույն չափով բերելուց և նրա մեջ «մատեան» բառը հաշվելուց հետո, գլուխ է անում. Նամակում «մատեան» բառի գործածությունն... հաճախականությամբ «բացահայտում» է Շիրակացու աշխատությունների քանակը և բնագավառները։ Խոսքը տանք Գ. Պետրոսյանին.

«Գրիգոր Մագիստրոսի նամակի վերնագրում գրված է. «և հարցումն գրոց Շիրակայնոյն, զոր Մեծ Քննիկոն անուանեն»։ Առաջին մասը որոշակի նշում է, որ հարցում է արվում Շիրակացու գրածների, աշխատությունների մասին։ Իսկ երկրորդ մասը ցույց է տալիս, թե այդ աշխատությունները ինչպես են անվանվել։ Եթե խոսքը «Քննիկոնի» մասին լիներ, Մագիստրոսը ամբողջ նամակում գոնե մեկ անգամ բացի վերնագրից, կնշեր «Քննիկոնի» մասին. նման բան գոյություն չունի։ Մագիստրոսը իր նամակում վեց անգամ գործածում է մատյան բառը, այդ նշանակում է՝ խոսքը գնում է Շիրակացու աշխատությունների մասին[44], որոնք զետեղված են այդ մատյանի մեջ։ Մեջ ենք բերում այդ նշումները.

1. ...հաւաքեալ ի բազմազան և յոքնաբեղուն մատենից...

2... որք նախքան զայնոսիկ հաւաքեալ ի մատեանս...

3... Եւ արդ, քանզի սակս մատենին Անանիայի եղև յիշատակ իմաստասիրելոյս մեզ...

4.... ի մոռացումն այսպիսւոյ մատենի ոչ միայն եղև անկեալ...

5.... եւ յայդմ մատենի մակագրութեան վերծանեաք...

6.... եւ խնդրեմք ի քումմէ լուսափայլութենէդ զնորագոյն մատեան շնորհել մեզ...

---

40 Գ. Պետրոսյան, Մաթեմատիկան... էջ 130։

41 Գ. Պետրոսյան, «Նորից Անանիա Շիրակացու Քննիկոնի մասին» ՊԲՀ, 1983, 4, էջ 135։

42 Անդ, էջ 131, 133, 135։ Մեջբերելով նրանց ովքեր հակառակ տեսակետ են պաշտպանում, հայտարարում է, որ նրանք «վերցրել են Գ. Պետրոսյանի եզրակացությունն ու ներկայացրել որպես նոր հայտնագործություն» (էջ 136)։ Մատնացույց անելով «Քննիկոնին» նվիրված մի շարք հոդվածներ, գրում է, որ «Գիտական տեսակետից դրանք ոչինչ չեն ներկայացնում, իսկ որոշ հարցեր արմատապես խեղաթյուրում են» (էջ 131), մոռանալով, որ քիչ առաջ գրել էր թե «որպես նոր հայտնագործություններ ներկայացրած եզրակացությունները իրեն նախկին եզրակացություններն են»։ Ստացվում է, որ «գիտական տեսակետից ոչինչ չներկայացնող և որոշ հարցեր արմատապես խեղաթյուրող եզրակացությունները» վերցված են Գ. Պետրոսյանից ու ներկայացված որպես «նոր հայտնագործություն»։ Այս էլ նշանակում է, որ Գ. Պետրոսյանի եզրակացությունները «գիտական տեսակետից ոչինչ չեն ներկայացնում, իսկ որոշ հարցեր արմատապես խեղաթյուրում են»։

Անկեղծ խոստովանություն։

43 Հմմտ. ՊԲՀ, 1980, № 2, էջ 214։

44 Ընդգծումը մերն է Ա. Մ.։

Մագիստրոսի նամակում նշված են Անանիա Շիրակացու գիտական աշխատությունների բնագավառները, այդ թվում և «քառիցն արհեստք», թվաբանությունը, երաժշտությունը, երկրաչափությունը և աստղագիտությունը։ Տոմարագիտության մասին նամակում խոսք չկա։ Այս թուղթը որոշակի կերպով ցույց է տալիս, որ նամակի վերնագրում «Մեծ քննիկոնը» ավելացված է հետագայում, գրիչների կամ խմբագիրների կողմից»[45]։

Ոչ գիտական մոտեցում, և ահա թե ինչու։

Սկսենք սկզբից «և հարցումն գրոց Շիրակայնոյ զոր մեծ Քննիկոն անուանեն» (էջ 135) նախադասության մեջ բաց է թողնված «Անանիայի» բառը։ Խորագիրը նշանակում է «և հայցումն (խնդրանք) Անանիա Շիրակացու գրքի որ մեծ Քննիկոն են անվանում» և ոչ թե «և հարցումն Շիրակացու գրածների, աշխատությունների մասին»։ «Գրոց»-ը գրաբարում «գիրք» բառի եզակի թվի սեռականն է՝ գիրք-գրոց և ոչ՝ հոգնակին՝ որը կլիներ «գրեանք» «գրեանց» կամ «գրենաց»։ Ուրեմն խոսքը մի գրքի՝ «Քննիկոնի» մասին է, և ոչ մի քանի աշխատությունների։

Վեց անգամ մատյան բառի մեջ հեղինակը տեսնում է Շիրակացու աշխատության վեց բնագավառները, որոնց մեջ՝ քառից արվեստները։ Իսկ եթե նամակը մի քիչ երկարեր և «մատեան» բառը վեցի փոխարեն կրկնվեր տասնվեց անգամ, ըստ Գ. Պետրոսյանի, Շիրակացին պետք է ունենար այդքան բնագավառների վերաբերյալ աշխատություններ։ Բայց ի՞նչ իրավունքով Գ. Պետրոսյանը հաշվի չի առել նամակում հանդիպող «գիրք» բառը, որը «մատեանի» հոմանիշն է և օգտագործվում է «Քննիկոնի» փոխարեն, ինչպես «Անանիայի գրոց Շիրակայնոյ» «զգիրս Անանիայի Շիրակայնոյ» դեպքերում. չէ՞ որ սրանք էլ կարող էին բնագավառներ նշանակել։

Բայց տեսնենք թե «մատեան» բառը վեց անգամ ինչ առումներով է գործածվել։

1. «Մատենից» հոգնակին նշանակում է «մատյաններից», հունական, քաղդեական բազմաթիվ մատյաններից (որոնց պարունակությունից Շիրակացին քաղել է իր «Քննիկոնի» նյութը)...

2. Այս նույն նյութերը մինչև այս մատյանում («Քննիկոնում») հավաքվելը...

3. Անանիայի մատյանի («Քննիկոնի») մասին...

4. Այսպիսի մատյանի («Քննիկոնի»)...

5. Այդ մատյանի («Քննիկոնի»)...

6. Նոր մատյան («Քննիկոն»), նոր արտագրություն, նոր ձեռագիր։

Այսպիսով «մատեան» բառի գործածության վեցից չորս դեպքերում (2, 3, 4,5) դրվում է «Քննիկոնի» փոխարեն։ Առաջին դեպքում՝ այլ ժողովուրդների մատյաններ են, իսկ վերջինը...։

Այս վերջին մատյանը վեցերորդ բնագավառն է, որի գործը շատ դժվար է։ Բանն այն է, որ Գրիգոր Մագիստրոսը Պետրոս կաթողիկոսից նոր միայն խնդրում էր այդ նորագույն մատյանը, որը «Քննիկոնի» նոր ընդօրինակությունն էր լինելու։

Ըստ Պետրոսյանի, Շիրակացու գիտական ժառանգությունը ոչ թե Գրիգոր Մագիստրոսի նամակում նշված առարկաների հիման վրա, Շիրակացու

---

45 ՊԲՀ, 1983, № 4, էջ 135։

արդեն հայտնի և նորահայտ բնագրերի պատմաքննական, բանասիրական հետազոտությունների միջոցով պետք է ուսումնասիրել (այդ, ըստ նրա «արատավոր» մեթոդ է), այլ՝ գուշակությամբ. քանի «մատեան» բառ, նույնքան բնագավառ:

1974 թ. լույս տեսան «Անանիա Շիրակացու «Քննիկոնը» վերնագրով մեր հոդվածները[46], ուր Գրիգոր Մագիստրոսի նամակի մասին նկատեցինք, որ «Պետրոս Գետադարձ կաթողիկոսին Գրիգոր Մագիստրոսի գրած սույն նամակը անգնահատելի ծառայություն է մատուցում «Քննիկոնի» հայտնաբերման և Շիրակացու գործունեության գնահատման գործում և ճիշտ չի ընկալվել ըստ ամենայնի, չնայած շատերն են դիմել նրան և օգտագործել մեջբերումներով»[47], որ այս «Քննիկոնը» կուռ ծրագրով և հստակ նպատակադրումով ստեղծված աշխատություն է եղել գիտական հարուստ բովանդակությամբ, որ այն հայոց դպրության մեջ բարձրագույն կրթությունը արմատավորելու համար գրված դասագիրք էր՝ կազմված բնական գիտությունների հիմքի վրա: Անտիկ աշխարհում դաստիարակության բովանդակությունը կազմող «քառյակ արվեստները», որ հետագայում (VI—XV դդ.) Արևմտյան Եվրոպայում և Հայաստանում բարձրագույն կրթության հիմք դարձան, «Քննիկոնի» միայն մի մասն են կազմում» ներկայացրել ենք «Քննիկոնի» բովանդակությունը ըստ Գրիգոր Մագիստրոսի նշված նամակի[48]:

Այդ նամակը նշում է նաև «Քննիկոնից» տեղիներ, որոնց հանդիպում ենք Շիրակացու անունով հայտնի երկերում. Այսպես. «զոր և ինքն իսկ, որ մատենագրեց զայդոսիկ յառաջնում իւրոյ տրամաբանութեան բազում տարակուսանս և կեղերջականս սակս մերոյ ազգային անփոյթ առնելոյ զայդպիսի գործառութիւնս» (այսինքն՝ այդպիսի աշխատությունների նկատմամբ մեր ազգի ունեցած անփութության վերաբերյալ Շիրակացու բազմաթիվ տարակուսանքները և տրտունջները), որ կարդում ենք նամակի 8-րդ էջում, մենք գտնում ենք նրա այսպես կոչված «Ինքնակենսագրության» մեջ. «Եւ վասն զի ոչ գտանէր յաշխարհիս հայոց մարդ ոք, որ գիտէր իմաստասիրութիւնն, այլ և ոչ անգամ գիրք արուեստից ուրեք գտանէին: Ահա և ի Յունացն դիմեցի յաշխարհ»: (Շիրակացու գործածած «իմաստասիրությունը» Մագիստրոսի մոտ անվանված է «խոհեմական արհեստ»՝ «քառիցն

---

46 Ա. Մաթևոսյան, Անանիա Շիրակացու «Քննիկոնը», ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր» (հաս. գիտ.), 1974, № 7, էջ 66—68, № 8, էջ 71—81:

47 Անդ, էջ 67:

48 Անդ, էջ 67—68: Սրանից հետո ձեռնամուխ եղանք «Քննիկոնի» վերականգնման դժվարին և պատասխանատու գործին, հիմք ունենալով Հ. Դրասխանակերտցու, Ս. Ասողիկի, Գ. Մագիստրոսի վկայությունները, օգտագործելով Շիրակացու գործերի հրատարակությունները, նրա մասին ուսումնասիրությունները և հատկապես Մատենադարանի ձեռագրերի անհայտ և անտիպ նյութերը:

1979 թ. «Պատմա-բանասիրական հանդեսի» 2-րդ համարում հրատարակեցինք «Անանիա Շիրակացու «Քննիկոնի» երկրաչափության բաժինը» (էջ 163—178), իսկ «Լրաբերում», այդ բաժնի մաս կազմող «Անանիա Շիրակացու «Աշխարհագրության» հետ կապված մի քանի հարցեր» (№ 9, էջ 78—86) և «Եվկլիդեսի «Տարրերը» Անանիա Շիրակացու «Քննիկոնի» երկրաչափության մաս» (1980, № 1, էջ 89—95) հոդվածները: Մինչ այդ հրատարակել էինք «Նորահայտ պատառիկներ Անանիա Շիրակացու թվաբանության դասագրքից» (1974, № 6, էջ 65—76) հոդվածը, 7-րդ դարի երեք պատառիկների հիման վրա:

արհեստք»)։ Ապա՝ «Եւ արդ՝ ես տրտմս Հայաստանեաց ուսայ ի նմանէ (Տյուքիկոսէ—Ա. Մ.). զհզաւր արուեստս զայս, որ թագաւորաց է ցանկալի, և բերի յաշխարհս մեր՝ առանց ուրուք լինելոյ ձեռնտու, միայն ջանիւ իմոյ անձինս... թէպէտ և ոչ ոք եղև շնորհակալ և մեծարաւղ իմոյ աշխատութեան, քանզի և ոչ սիրաւղ իսկ է ազգ մեր իմաստից և գիտութեանց, այլ ծոյլք և ձանձրացողք... Կեղծաւորք անափառք ցուցանեն ունել զկերպարանս գիտութեանն և կոչիլ ի մարդկանէ բարբի հայցեն։ Այլ և ի վերայ իմ պարսաւանս տգիտութեան, որք չինքենէ էին չերիրեալք...»[49]։

Գ. Մագիստրոսը նամակում նշում է, որ այս հատվածը գտնվում է «Քննիկոնի» մեջ՝ «յառաջնում իւրոյ տրամաբանութեան»։

Մաշտոցի անվան Մատենադարանի № 699 և № 10381 ձեռագրերում Շիրակացու գանգատը պարունակող «Ինքնակենսագրությունը» գտնվում է գործնական թվաբանության սկզբում[50]։ Հույները ունեին տեսական թվաբանություն և գործնական թվաբանություն՝ «արիֆմետիկա» և «լոգիստիկա» անուններով։ Մագիստրոսը «լոգիստական» թարգմանում է «տրամաբանություն»։ Իսկապես, Շիրակացու գործնական թվաբանության կամ տրամաբանության սկզբում է գտնվում «ինքնակենսագրությունը», որի մեջ վերը բերված գանգատական խոսքերն են։ Իսկ այս էլ նշանակում է, որ վերը բերված նյութերը, որոնք գործնական թվաբանության բաղադրյալ մասերն են, մաս են «Քննիկոնի» մեջ։

Գրիգոր Մագիստրոսի նամակի և Անանիա Շիրակացու արդեն հայտնի և մինչև այսօր անհայտ երկերի հիման վրա վերականգնվում է Անանիա Շիրակացու «Քննիկոնը»։

Շիրակացու գործերի վերականգնման ուղղությամբ արդեն սկսած աշխատանքները, որոնք հենվում են նաև Գրիգոր Մագիստրոսի նամակի վրա, Գ. Պետրոսյանը համարում է «մոլորության արդյունք»։ Մոլորության մեջ են նրանք, ովքեր Անանիա Շիրակացու նման վիթխարի անհատականության գիտական ժառանգության ուսումնասիրությունը համարում են ավարտված, մի գիտնականի, որն իր մասին գրում է, թե «բաւանդակեցի զպիտութիւն մերոյ ազգիս Հայաստանեաց, և հմուտ եղեալ աստուածաշունչ գրոց... ամա ութ ուսայ լիով զարուեստ համարողութեան» (այսինքն մաթեմատիկան, ուսումնականը կամ քառյակ գիտությունները), որ «հմուտ եղէ գրոց բազմաց, որք և ոչ ի մերս են թարգմանեալ լեզուս... յայտնիք և գաղտնիք, արտաքինք, արուեստականք և պատմագիրք, բժշկականք, ժամանակագիրք...», որ «զհզաւր արուեստս զայս, որ թագաւորաց է ցանկալի, բերի յաշխարհս

49 Անանիա Շիրակացի. Մատենագրություն, էջ 208—209։

50 Ահա գործնական թվաբանության պարունակությունը № 699 ձեռագրում. 187բ Անանիայի Շիրակունւոյ հարցս երանեալ վարդապետի վասն որպիսութեան կենաց իւրոց (այսպես կոչված «ինքնակենսագրությունը» Ա. Մ.)։ 194ա Անանիայի յաղագս կատարման համարողութեանն և կերպից հարցմանէ։ 204ա Գրեմ ձեզ և խրախճանականս յորժամ ի կերակուրս և յըմպելիս զուարճանայք և կամիք խաւսել բանս զուարճացուցիչս և ծիծաղականս։ 207ա Անանիայի Շիրակունւոյ համարողի յաղագս կշռոյ և կշռոց և կշռորդաց։ 211ա Անանիայի Շիրակունւոյ յաղագս չափոյ և չափուց և պատարագաց։ 214ա Անանիայի Շիրակունւոյ համարողի թիւք որչափութեանն տանց հին կտակարանացն։ 215ա Նորին՝ թիւք որչափութեանց Նոր կտակարանացն։ Ր էջը, որպես պետք է լինեի նաև հաջորդ երկի վերնագիրը, չի գրված։ Այն գտնում ենք 10381 ձեռագրից (էջ 331բ)։ 216ա Պատմութիւն երկոտասան քարանց 217ա Վճարումն Անանիայի Շիրակունւոյ ժողովածոյն և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք, ամէն։

մեր...»[51], նրան, որ այդ գիտությունները «Քննիկոնի» մեջ ամբարելով ամբողջական դասընթաց է ստեղծել իր ժողովրդին լուսավորելու համար, համարում են միայն թվաբանական երեք գործողությունների, քանչորս խնդիրների, խրախճանակների, չափ ու կշռի, տոմարի հեղինակ, և նրան զրկում իր վիթխարի գիտական ժառանգությունից, և այն փառավոր տեղից, որ նրան է պատկանում հայրենի գիտության, ուսման և կրթության, ինչպես նաև համաշխարհային գիտության ու մանկավարժության պատմության բնագավառներում։

«Հայ դպրոցի պատմությունը,—գրում է Ա. Ալպոյաճյանը,—հայ քաղաքակրթության պատմության մեկ էջը կներկայացնէ։ Ուստի պետք է միշտ այդ անկյունեն դիտել մեր կրթական շարժումը, որ առնչություններ և կապեր ունի միշտ ընդհանուր ազգային մշակութային շարժման հետ և որ անոր մեջ հսկա դեր կատարած է»[52]։ Անանիա Շիրակացին մեր գիտության և կրթական շարժման խոշորագույն ներկայացուցիչներից է, և նրա գործունեությունը պետք է գնահատել մեր պատմության ընդհանուր խորքի վրա։ Հիշյալ նամակը մեր անցյալի կրթական շարժման վիթխարի մեծություններից մեկի, Շիրակացու ժառանգության գնահատման կարևոր ուղենիշ է, գրված նույն շարժման մի այլ մեծության կողմից։ Պետք է ակնածանքով և երկյուղածությամբ մոտենալ նրանց ժառանգությանը։

Հայ բարձրագույն դպրոցի ծրագրի հիմքում V դարից ընկած էին եոթյակ գիտությունները, որոնք VII դարում այլևս չէին բավարարում։ Դեռևս V դ. վերջին Դավիթ Անհաղթը առաջարկում էր տիրապետել քառյակ գիտություններին։ Բարձրագույն կրթության համար հայերը այն ժամանակ գնում էին Եդեսիա, Անտիոք, Կեսարիա, Կ. Պոլիս, Աթենք, Ալեքսանդրիա և այլուր։ Հայաստանում «է (7) դարեն սկսեալ,—գրում է Ա. Ալպոյաճյանը,—չկրցան այս սահմանափակ ծրագրով գոհանալ, որն ստիպված ավելի ճոխացրին, վասն զի այլևս կզգուշանային հույն շրջանակներու հետ հարաբերելե, նախ տիրող արաբների ատելությունը չգրգռելու համար... և երկրորդ՝ անոր համար, որ հայերը սկսած էին իրենց ալ վերապահ դիրք բռնել հանդեպ հունաց, որոնք, երբ առիթը գտնեին կը նեղեին, ընդունել տալու համար անոնց քաղկեդոնականությունը...։ Հայ եկեղեցու անկախությունը պահելու նախանձախնդրությունը գլխավոր նպատակն է հայ կղերին... որ չէր ուզեր որ ազգային զավակները բարձրագույն ուսման համար Հունաստան երթային։ Հարկ եղավ բարձրագույն ուսմանց պետքը Հայաստանի մեջ լրացնել... ավելի զարկ տրվեցավ վարդապետարաններուն։ Օտարին կարոտ չլլալու համար... Օտար ուսմանց ալ հետամուտ եղավ»[53]։

Ա. Ալպոյաճյանը չգիտեր «Քննիկոնի» մասին։ Հայ դպրոցի պատմությանը նվիրված ամբողջ աշխատության մեջ չի հիշվում ոչ «Քննիկոնը», ոչ էլ Գրիգոր Մագիստրոսի հիշյալ նամակը։ Բայց հայ դպրոցի պատմության հմուտ մասնագետը ճշմարիտ ներկայացնում է ժամանակաշրջանը և նրա պահանջը, որը պետք է ստեղծեր, և ստեղծեց «Քննիկոնը»։

51 Անանիա Շիրակացի, *Մատենագրություն*, Երևան, 1944, էջ 209։

52 Ա. Ալպոյաճեան, *Պատմութիւն հայ դպրոցի*, Կահիրե, 1945, «Երկու խօսք»։

53 *Անդ*, էջ 178։

А. С. МАТЕВОСЯН

# ГРИГОР МАГИСТРОС И «КННИКОН» АНАНИИ ШИРАКАЦИ

## Резюме

Замечательный деятель армянской культуры и науки XI в. Григор Магистрос обратился к армянскому католикосу Петросу (1019—1058 гг.) с просьбой прислать ему один экземпляр «Кникона» (666 г.), который хранился в резиденции католикосата. Григор Магистрос намеревался использовать его в своей академии. Поэтому в письме он, во-первых, представляет содержание «Кникона», в который входят арифметика, музыка, геометрия, астрономия, искусства, литература и многое другое, затем показывает, что все эти науки входят в риторическое образование, и поэтому необходимо размножить и в учебных целях применять «Кникон» и в духовных школах. Как следует из последующих писем Григора Магистроса, он получил список «Кникона» Анании Ширакаци, ставший одним из учебников в его школе.

A. S. MATHEVOSSIAN

# GRIGOR MAGISTROS ET LE „KNNIKON" D'ANANIA CHIRAKATSI

## Résumé

Grigor Magistros, célèbre homme de science et de lettres du XIe siècle, est l'auteur d'une lettre adressée au catholicos arménien Pétros (1019—1058) où il demande à ce dernier de lui envoyer l'exemplaire du „Knnikon" (666) conservé à la résidence du catholicossat. Grigor Magistros avait l'intention de l'utiliser comme manuel dans son académie. Aussi, dans sa lettre, il commence par présenter le contenu du „Knnikon" qui inclut l'arithmétique, la musique, la géométrie, l'astronomie, l'art, la littérature, etc., puis il montre que toutes ces sciences font partie de l'instruction rhétorique, d'où la nécessité de copier le „Knnikon" et de s'en servir pour enseigner dans les écoles religieuses. Comme il s'ensuit des lettres suivantes de Grigor Magistros, il reçut une copie du „Knnikon" d'Anania Chirakatsi et en fit un des manuels de son école.